## ԱՆԳԼԵՐԵՆԻ ԱՅԲՈՒԲԵՆԸ

| | | | |
|---|---|---|---|
| **Aa** [eɪ] | **Bb** [bi:] | **Cc** [si:] | **Dd** [di:] |
| **Ee** [i:] | **Ff** [ef] | **Gg** [dʒi:] | **Hh** [eɪtʃ] |
| **Ii** [aɪ] | **Jj** [dʒeɪ] | **Kk** [keɪ] | **Ll** [el] |
| **Mm** [em] | **Nn** [en] | **Oo** [ou] | **Pp** [pi:] |
| **Qq** [kju:] | **Rr** [ɑ:] | **Ss** [es] | **Tt** [ti:] |
| **Uu** [ju:] | **Vv** [vi:] | **Ww** [ˈdʌblju:] | **Xx** [eks] |
| **Yy** [waɪ] | **Zz** [zed, *ամերիկ.* zi:] | | |

Հայերեն-Անգլերեն զրուցարան - Եր.: «Արեգ» հրատարակչություն, 2009, 128 էջ:

ISBN 99930-56-12-2



# ՀԱՅԵՐԵՆ-ԱՆԳԼԵՐԵՆ ԶՐՈՒՑԱՐԱՆ



ԵՐԵՎԱՆ. ԱՐԵԳ. 2009

*Եթե դուք պատրաստվում եք մեկնել Մեծ Բրիտանիա, Ամերիկայի Միացյալ Նահանգներ կամ անգլիախոս այլ երկրներ, անպայման գնեք այս գիրքը: Զրուցարանը ձեզ կօգնի առօրյա տարբեր թեմաներով շփվել տեղի բնակչության հետ: Սա նաև յուրօրինակ ուղեցույց է Անգլիայի և ԱՄՆ-ի հիմնական տեսարժան վայրերի, այդ երկրների ժողովուրդների կենցաղի ու սովորույթների մասին: Տրված են նաև որոշ գործնական խորհուրդներ, որոնք ձեզ կօգնեն ճիշտ կողմնորոշվել ամենատարբեր իրավիճակներում:*

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## Մեծ Բրիտանիա

■ Ընդհանուր տարածքը 244.111 քառ. մետր է: Ունի շուրջ 60 մլն բնակչություն:

■ Բաժանված է չորս վարչաքաղաքական պատմական մարզերի՝ Անգլիա (մայրաքաղաքը՝ Լոնդոն), Ուելս (Քարդիֆ), Շոտլանդիա (Էդինբուրգ) և Հյուսիսային Իռլանդիա (Բելֆաստ):

■ Խոշոր գետերն են՝ Թեմզա, Սևերն, Մերսի, Քլայդ:

■ Հարուստ է քարածխով, նավթով, բնական գազով, երկաթահանքով, անագով, արճիճով և այլն:

■ Ձմեռ զրեթե չի լինում: Օդի ջերմաստիճանը հազվադեպ է իջնում զրոյից ցածր: Հունվարին Լոնդոնում միջին ջերմաստիճանը +4 է (ըստ Ցելսիուսի), իսկ հուլիսին՝ +18:

■ Անտառները կազմում են ընդհանուր տարածքի ընդամենը 7%-ը:

■ Ամենախոշոր քաղաքներն են՝ Լոնդոն (շուրջ 7.5 մլն մարդ), Բիրմինգեմ (940.000), Գլազգո (655.000), Շեֆիլդ (500.000), Լիվերպուլ (450.000), Էդինբուրգ (421.000), Մանչեսթեր (400.000), Բելֆաստ (280.000), Քարդիֆ (272.000): Բնակչության 92%-ը բնակվում է քաղաքներում:

■ Մեծ Բրիտանիայում կա շուրջ 100 համալսարան, որոնցից ամենահինը և ամենախոշորն են Օքսֆորդի (1133թ.), Քեմբրիջի (1209թ.) և Գլազգոյի համալսարանները: Երկրում գործում են ավելի քան 1000 քոլեջ և դպրոց:

■ Ազգային դրամը ֆունտ ստեռլինգն է, մանրադրամը՝ պենսը: Մեկ բաժակ սուրճը մոտավորապես արժե 0.7, մեկ գավաթ գարեջուրը՝ 2, մետրոյի տոմսը՝ 2.8, ծխախոտի տուփը՝ 2.8, կինոթատրոնի տոմսը՝ 4 - 6 ֆունտ ստեռլինգ:

### *Հեռախոսակապ*

Ավտոմատ հեռախոսով զանգելը բավականին անհարմար է. այս հեռախոսների մի մասն աշխատում է միայն մետաղադրամներով, մյուս մասը՝ միայն հեռախոսային կամ կրեդիտային քարտերով: Բրիտանիայից արտասահման զանգելու ամենաէժան ձևը հեռախոսային քարտերն են, որոնք վաճառվում են փոստում, հատուկ կրպակներում ու խանութներում: 0800-ով սկսվող բոլոր հեռախոսահամարներով զանգելն անվճար է: Հարկ է հիշել, որ հեռախոսային խոսակցությունը կարող է շատ թանկ լինել: Եթե դուք զանգեք մինչև տեղական ժամանակով ժամը $13^{00}$-ն, ապա կարող եք սնանկանալ: Հեռախոսագրքերում, որպես օրենք, սկզբնատառեր չեն գրվում, իսկ հեռախոսավարուհին ձեր փնտրած մարդու համարը կարող է տալ միայն այն դեպքում, եթե դուք գիտեք նրա հասցեն:



### *Ազգային տոներ*

■ Ամանոր – 1-ը հունվարի
■ Զատիկ – Ապրիլ
■ Զատկական երկուշաբթի
■ Մայիսյան տոն – մայիսի առաջին երկուշաբթին
■ Գարնան տոն – մայիսի վերջին երկուշաբթին
■ Օգոստոսի հանգստյան օր – օգոստոսի վերջին երկուշաբթի
■ Սուրբ Ծննդյան տոն – 25-ը դեկտեմբերի
■ Սուրբ ծննդյան տոնի նվերների օր – 26-ը դեկտեմբերի
■ Սուրբ ծննդյան տոնի հանգստյան օր -- 27-ը դեկտեմբերի

### *Փառատոներ*

■ ապրիլ – ծաղիկների ցուցահանդես
■ մայիս – Ռոչեսթերի ծխնելույզ մաքրողների փառատոն
■ հունիսի սկիզբ – ժամանակակից արվեստի, փողոցային թատրոնի և դասական երաժշտության միջազգային փառատոն Բաթում:
■ հուլիսի սկիզբ – արքայական ռեգատա Հենլիում, Օքսֆորդից 30 կմ հեռու:
■ հուլիս – լոնդոնյան Սիթիի փառատոն (արվեստների փառատոն): Եկեղեցական երաժշտության փառատոն Չիչեսթերում, Սոլսբերիում, Վինչեսթերում:
■ հուլիսի վերջ – Ռոբին Հուդի տոն (Նոթինգեմ)

- օգոստոս – «Բիթլզ» փառատոն Լիվերպուլում
- սեպտեմբեր – կելտական քրմերի ծեսեր՝ աշնանային գիշերահավասարի ժամանակ (Լոնդոն)
- նոյեմբեր – հնագույն մեքենաների մրցարշավ (Լոնդոն-Բրայթոն)

*Ազգային խոհանոց*

**Առաջին բաժակ թեյը** – Բոլոր բրիտանացիների օրը սկսվում է առաջին բաժակ թեյը խմելով, որից հետո միայն հերթը գալիս է նախաճաշին:

**Նախաճաշ** – բոված հացի շերտիկներ՝ նարնջի մուրաբայով, թեյ կամ սուրճ, խոզապուխտով ձվածեղ, նրբերշիկ, վարսակաձավարի թանձր կաթնապուր (փորիջ), եգիպտացորենի կամ այլ հացազգիների ձողիկներ և նարնջի հյութ:

**Ցերեկային թեյ** – Սովորաբար խմում են ժամը $11^{00}$-ին՝ շատ քաղցր թխվածքաբլիթներով:

**Լանչ** – Անգլիացիների լիարժեք նախաճաշը (սովորաբար՝ ժամը $12^{00}$-ից $14^{00}$-ի արանքում): Հոթ-դոգ կամ ձկան ֆիլե՝ տապակած կարտոֆիլով և բանջարեղենով:

**Անգլիական ավանդական թեյախմություն** (ժամը $15^{00}$-ի և $18^{00}$-ի արանքում):

**Ճաշ** – Բրիտանացիները ճաշում են ժամը $19^{00}$-ին կամ $23^{00}$-ին: Նշենք նրանց սիրած մի քանի կերակրատեսակ.



- Ջեթի մեջ բոված հաց, որին քսում են պանրով, հարած դեղնուցով, կարմիր պղպեղով և մանանեխով պատրաստած զանգվածը:
- Հավի ապուր՝ բանջարեղենով (cock-a-leekie)
- Ոչխարի գլխով ապուր՝ բանջարեղենով (scots)
- Ռոստբիֆ (roastbeaf) – Ջեռոցի մեջ եփած մսի կտոր (10 րոպե ջեռոցում պահելուց հետո՝ եփում են մարմանդ կրակի վրա): Մատուցվում է յորքշիրյան պուդինգով (երկու հարած ձվից, մի բաժակ ալյուրից և կես լիտր կաթով պատրաստած թխվածք)
- Հորթի երիկամներով թխվածքաճաշ
- Խմորի մեջ եփած բիֆշտեքս (steak pie)
- Կարտոֆիլով կարկանդակ՝ ոսխով
- Չամիչով պուդինգ (pudding raisin) – Չամիչից բացի այս ճաշատեսակի մեջ առկա են նաև կովի երիկամի ճարպ, չորահաց, ալյուր, ձու, շաքարած միրգ, ցիտրուսակեղև, կիտրոնի հյութ, մշկընկույզ, ռոմ, կոնյակ, գարեջուր: Եփում են վեց ժամ:

*Բրիտանացիների բնավորության մի քանի յուրահատկություններ*

Անգլիացին քաղաքավարի է, համեստ է ու հարգալից մտերիմների հանդեպ: Խաղաղ բնավորություն ունի և ավել կամ պակաս բարեհամբույր է՝ կախված ծննդավայրից: Նրան բնորոշ են նրբանկատությունը, ձեռներեցությունը և, ամենակարևորը, անկախության զգացումը: Ծառախոսությունը համարում է ան-

դատիարակության նշան: Անգլիայում ազնիվ խոսքին պետք է հավատալ: Նա նաև ճշտապահ է և հարգում է օրենքներն ու ավանդույթները:

*Լոնդոնի մի քանի տեսարժան վայրեր*

■ **Բուքինգեմի պալատ** – Բրիտանիայի թագավորական ընտանիքի նստավայրը: Մուտքի մոտ ծածանվող թագավորական դրոշակը նշան է այն բանի, որ թագուհին պալատում է: Որոշ սրահներ բաց են զբոսաշրջիկների համար:

■ **Վեսթմինսթերի տաճար** (XIX դ.)

■ **Վեսթմինսթերի աբբայություն** (XIII դ.) – Բոլոր միապետների թագադրության (ինչպես նաև ամուսնությունների, հուղարկավորությունների) վայրը: Հայտնի է նաև «բանաստեղծների անկյունով», որտեղ թաղված են Շեքսպիրը, Միլթոնը, Բլեյքը, Սպենսերը, Շելլին, Բայրոնը... Այստեղ է գտնվում Անհայտ զինվորի գերեզմանը, որի դիմաց կանգնեցված է Չերչիլի հուշարձանը: Մուտքն ազատ է: Գերեզմանոցը բաց է կիրակի օրերին:

■ **Քենսինգթոնի պալատ** – Ուելսի արքայազնի լոնդոնյան պաշտոնական նստավայրը: Առաջին հարկում ցուցադրվում են պալատականների կոստյումներ (1750-ից մինչև մեր օրերը), այդ թվում նաև արքայադուստր Դիանայի հարսանեկան շորը:



■ **Նորին Մեծության «Բելֆաստ» նավը** – Եվրոպայի ամենահին և ամենամեծ հածանավը, որը 2-րդ համաշխարհայինի ժամանակ մասնակցել է Նորմանդիայում զորքերի ափհանմանը: Բաց է ամեն օր:

■ **Լոնդոնի կենդանաբանական այգի** – Ամենահինը աշխարհում: Համարվում է նաև ամենամեծերից մեկը (5.000 կենդանի): Բաց է բոլոր օրերին: Մուտքը՝ վճարովի:

■ **Թագավորական ախոռներ** (1824 թ.) – Այստեղ կարող եք տեսնել ձիեր և կառքեր, որոնցից օգտվում են թագուհին և նրա շրջապատը, ինչպես նաև 1762 թ. այսպես կոչված Ոսկե կառքը, որն օգտագործում են ամենախոշոր ծիսակատարությունների ժամանակ:

■ **Թաուեր կամուրջը** – Բացովի կամուրջ, ամենագեղեցիկը Թեմզայի վրա: Մուտքը վճարովի է:

■ **Թրաֆալգարի հրապարակ** – Այստեղ է գտնվում Նելսոնի հանրահայտ կոթողը՝ շրջապատված բրոնզե առյուծներով (որոնց սիրում են հեծնել զբոսաշրջիկներն ու լուսանկարվել): Այս հրապարակում են բնակվում աշխարհի թերևս ամենալկտի... աղավնիները (որոնց կերակրելը, ի դեպ, արգելվում է. տուգանքը՝ 50-150 ֆունտ ստեռլինգ):

■ **Բարբիքան կենտրոն** – Եվրոպայի խոշորագույն մշակութային կենտրոն (երկու պատկերասրահ, երկու ցուցասրահ, հանրային գրադարան, համերգա-

սրահ, երկու թատրոն, երեք կինոթատրոն, ինը բար, երկու ռեստորան, սրճարաններ, խանութներ): Բաց է ամեն օր:

■ **Բրիտանական թանգարան** – Երկրի ամենախոշոր թանգարանն է: Բաց է ամեն օր, մուտքը՝ անվճար:

■ **Թեյթ-Մոդեռն պատկերասրահ** – Բացվել է 2001 թվականին. այդ տարի ունեցել է 5 մլն այցելու: Այստեղ են հավաքված ժամանակակից արվեստի լավագույն նմուշները: Բաց է ամեն օր, մուտքը՝ անվճար:

■ **Լոնդոնյան զնդան** – Միջնադարի առաջին և ամենամեծ թանգարանն աշխարհում: Տանջանքների ու մահապատիժների յուրահատուկ էֆեկտներ: Ամենահամարձակների համար՝ ճանապարհորդություն XIX դարի Լոնդոնի վտանգաշատ թաղամասերով: Տղամարդկանց մի մասը հայհոյում է, կանայք ուշաթափվում են, երեխաները ճղճղում են վախից ու հիացմունքից, բայց բոլորը գոհ են: Բաց է ամեն օր, մուտքը՝ վճարովի:

■ **Շարժվող պատկերների թանգարան** – Կինոյի և հեռուստատեսության թանգարան, որի 50 դահլիճներում կարող եք տեսնել ցանկացած դարաշրջանի ցանկացած ֆիլմ: Բաց է ամեն օր, մուտքը՝ վճարովի:

■ **Մադամ Թյուսոյի թանգարան** – Մոմե կերպարների աշխարհահռչակ թանգարան, որտեղ կարող եք



հանդիպել անցյալի և մեր օրերի նշանավոր մարդկանց. թույլատրվում է լուսանկարվել բոլոր մոմե կերպարների հետ՝ բացառությամբ թագավորական ընտանիքի անդամների: Բաց է ամեն օր, մուտքը՝ վճարովի:

■ **Ֆրոյդի թանգարան** – Այստեղ կարող եք տեսնել Զիգմունդ Ֆրոյդի աշխատասենյակը, որտեղ աշխարհահռչակ հոգեվերլուծաբանը, 1938 թ. Վիեննայից փախչելուց հետո, անց է կացրել կյանքի վերջին տարին: Բաց է չորեքշաբթիից մինչև կիրակի, մուտքը՝ վճարովի:

■ **Ազգային պատկերասրահ** – Վերջին վեց դարերի արևմտաեվրոպական նկարչության անզնահատելի հավաքածուն այցելուների առաջ բաց է ամեն օր: Մուտքն անվճար է, բացառությամբ այն դեպքերի, երբ այստեղ կազմակերպվում են նոր ցուցահանդեսներ:

■ **Հայդ-պարք** – Աշխարհի ամենահայտնի, Մեծ Բրիտանիայի ամենամեծ (140 հեկտար) և լոնդոնցիների ամենասիրած զբոսայգին: Բաց է ամեն օր (ժամը $5^{00}$-ից մինչև $00^{00}$):

### *Որտե՞ղ կատարել գնումները*

Թանկարժեք իրերի սիրահարները պետք է գնան Նայթսբրիջ՝ ամենաշքեղ և ամենաթանկ թաղամասը, իսկ հնաոճ իրեր գնելու համար ամենահարմարը Քենսինգթոն-Չըերչ-ռոուդի կրպակներն են: Եթե

երաժշտասեր կամ գրքասեր եք, անպայման ուղևորվեք Քովենթ-Գարդըն: Ճենապակու, հախճապակու և զարդեղենի համար շտապեք Ռիչենթս-սթրիթ: Իսկ եթե ցանկանում եք այդ ամենը ձեռք բերել ցածր գներով, ապա դուք, իհարկե, պետք է գնաք շուկա: Ահա դրանցից մի քանիսը.

■ **Flea Market (լվի շուկա)** – Հնամաշ ջինսեր, զարդեղեն, նորաձև կոշիկներ, աֆրիկյան և անթիլյան կտորեղեն: Բաց է ուրբաթ և շաբաթ օրերին, ժամը $7^{00}$-ից $15^{00}$-ը:

■ **Portobello** – Արծաթեղեն, հնաոճ ժամացույցներ, հին լուսանկարներ և այլն: Ամենաաշխույժ օրը շաբաթն է: Բաց է ժամը $6^{00}$-ից:

■ **Church st.** – Էժանագին հագուստ, խաղալիքներ, ծովի բարիքներ, մրգեր, բանջարեղեն: Բաց է ամեն օր:



# Ամերիկայի Միացյալ Նահանգներ

■ Մայրաքաղաքը՝ Վաշինգթոն:

■ Ընդհանուր տարածքը 9666861 քառ. կմ է:

■ Ունի շուրջ 264 մլն բնակչություն:

■ Անենախոշոր քաղաքներն են՝ Նյու Յորք (շուրջ 15 մլն մարդ), Լոս Անջելես (ավելի քան 10 մլն), Չիկագո (մոտ 7 մլն), Ֆիլադելֆիա (4 մլն), Մայամի (3.5 մլն), Դեթրոյթ (3 մլն), Դալլաս (2.8 մլն), Վաշինգթոն (2.6 մլն) և այլն:

■ Կյանքի միջին տևողությունը. տղամարդիկ՝ 72 տարի, կանայք՝ 79 տարի:

■ Սպիտակամորթները կազմում են բնակչության 84%-ը:

*Ազգային խոհանոց*

**Նախաճաշ** – Ձվածեղ՝ խոզապուխտով, նրբերշիկով և տապակած կարտոֆիլով:

**Լանչ** (երկրորդ նախաճաշ, ժամը $12^{00}$-ից $14^{00}$-ը) – Ապուր և համբուրգեր (կամ չիզբուրգեր, մամաբուրգեր, պապաբուրգեր և այլն):

**Ընթրիք** – ապուրներ, աղցաններ, 2-րդ ճաշատեսակ և այլն:

Ամերիկյան ազգային կերակուրը համբուրգերն է և արագ սնվելու մյուս տեսակները՝ կոկա-կոլայի հետ

միասին: Ամերիկացիները կատակում են, որ իրենք խմում են միայն մեկ տեսակի խմիչք. տաք վիճակում դա սուրճն է, իսկ սառը վիճակում՝ կոկան:

### *Պետական տոներ*

- Ամանոր – 1-ը հունվարի
- Մարտին Լյութեր Քինգի հիշատակի օր – հունվարի 3-րդ հինգշաբթին
- Ջորջ Վաշինգտոնի ծննդյան օր – փետրվարի 3-րդ երկուշաբթին
- Հիշատակի օր – մայիսի վերջին երկուշաբթին
- Անկախության օր – հուլիսի 4-ին
- Նախագահի օր – հուլիսի 21-ին
- Աշխատանքի օր – սեպտեմբերի 1-ին երկուշաբթին
- Կոլումբոսի օր – հոկտեմբերի 2-րդ երկուշաբթին
- Գոհաբանության օր – նոյեմբերի 4-րդ հինգշաբթին
- Վետերանների օր – նոյեմբերի 11-ը
- Սուրբ ծնունդ – դեկտեմբերի 25-ը

Պաշտոնական տոներից բացի, լայնորեն նշվում են նաև Զատիկը, Սուրբ Վալենտինի օրը (14-ը փետրվարի), Հելոուինը (31-ը հոկտեմբերի), Մայրիկի օրը (մայիսի երկրորդ կիրակին), Հայրիկի օրը (հունիսի 3-րդ կիրակին), հրեական որոշ տոներ:

### *Ազգային յուրահատկություններ*

Ամերիկացիները հպարտանում են, որ իրենք աշխարհի լավագույն երկրի քաղաքացիներն են: Խստականոն չեն ոչ շարժումների, ոչ հագուստի հարցում: Ժպտում են նույնիսկ այն դեպքում, երբ ուրախանա-



լու առիթ չկա: Այստեղ ընդունված չէ դժբախտ լինել: Եթե նրանց «ինչպես ես» հարցին դու սկսես պատմել քո գործերի մասին, քեզ տաղտկալի մարդու տեղ կդնեն կամ խորհուրդ կտան դիմել հոգեբույժի:
Պաշտում են մրցակցությունը և գնահատում են նվաճումները: Հաջողությունը չափվում է վաստակած դրամի քանակով: Գործարար ամերիկացին մանրախնդիր չէ, սակայն հասկանում է, որ ցանկացած գործում մանրուքներ չկան: Ամերիկացիները խնայում են ժամանակը, գնահատում են ճշտապահությունը:

### *Խոշոր քաղաքները, տեսարժան վայրերը*

Վաշինգտոն – ԱՄՆ-ի մայրաքաղաքը: Ճերմակ մարմարի և լայնարձակ զբոսայգիների քաղաք է: Սպիտակ տան դիմաց վեր է խոյանում ԱՄՆ-ի առաջին նախագահ Ջորջ Վաշինգտոնին նվիրված կոթողը՝ քաղաքի ամենաբարձր շինությունը: Օրենքով արգելվում է մայրաքաղաքում կառուցել այս 170 մետրանոց հուշարձանից բարձր շինություն: Վաշինգտոնում կա 12 թանգարան (Ավիացիայի և տիեզերագնացության ազգային թանգարանը, Ազգային պատկերասրահ, Ամերիկայի պատմության ազգային թանգարան և այլն):

Նյու Յորք – Այստեղ են գտնվում ողջ աշխարհում հայտնի Ազատության արձանը, Բրուքլինի վիթխարի կամուրջը, Մանհեթենը, երկնաքերերը, Բրոդվեյը՝ «մեծ ճերմակ ճանապարհը»՝ իր թատրոններով, գիշերային ակումբներով ու ռեստորաններով, հյուրանոց-

ներով ու խանութներով: Այստեղ կարող եք այցելել նաև Ռոքֆելլերի կենտրոն (միավորում է մի քանի ռեստորան, խանութ, թատրոն), Ժամանակակից արվեստի թանգարան, Սողոմոն Գուգենհեյմերի թանգարան (աբստրակցիոնիզմի հարուստ հավաքածու, Շագալ, Կանդինսկի, Լեժե, Սեզան, Մանե, Մոնե, Պիկասո), Մետրոպոլիտեն թանգարան և այլն:

**Օռլանդո** – Աշխարհին հայտնի է իր Դիսնեյլենդով: Այստեղ է գտնվում նաև Ջոն Քենեդիի անվան տիեզերական կենտրոնը (ՆԱՍԱ), որտեղ կարող եք տեսնել Շաթլ տիեզերանավի թռիչքահրապարակը և տիեզերքի մասին պատմող ֆիլմ՝ վիթխարի էկրանի վրա:

**Մայամի** – Ամերիկայի հպարտությունն է: Այստեղ են բնակվում ամենահարուստ մարդիկ և «աստղերը»: Շքեղ ծովափ, տարվա միջին ջերմաստիճանը՝ + 25 (ծովում կարելի է լողալ կլոր տարին), փարթամ բուսականություն, պերճաշուք հյուրանոցներ և զվարճանքի վայրեր, թութակների զբոսայգի, կապիկների զբոսայգի, ձկնորսություն օվկիանոսում, կոկորդիլոսների ագարակ...

**Լոս Անջելես** – Վիթխարի քաղաք, ամերիկյան երազանքի մարմնավորում, որը հայտնի է իր Հոլիվուդյան և աշխարհի ամենաթանկ փողոցով (Ռոդեո Դրայվ):

**Լաս Վեգաս** – Կազինոների քաղաք՝ իր 74 խոշոր խաղատներով և աշխարհի ամենամեծ «Էմ-Ջի-Էմ» հյուրանոցով (5005 սենյակ): Այստեղ կյանքը կանգ չի առնում ոչ մի վայրկյան:



Բաժին I

# ԱՌՕՐՅԱ ԲԱՌԵՐ

## ❀ Հանդիպում և հրաժեշտ

| | | |
|---|---|---|
| Բարև ձեզ | **How do you do!** | *հաու դու յու դու* |

*(Խիստ պաշտոնական դիմելաձև: Կարող եք գործածել միայն այն դեպքում, երբ ձեզ ներկայացնում են պաշտոնատար անձի):*

| | | |
|---|---|---|
| Ողջո՛ւյն | **Hello!** | *հե՛լօու* |
| Բարի լույս | **Good morning!** | *գուդ մօ՛օնինգ* |
| Բարի օր | **Good afternoon!** | *գուդ աֆթըրնուն* |
| Բարի երեկո | **Good evening!** | *գուդ իիվնինգ* |
| Բարի գիշեր | **Good night!** | *գուդ նայթ* |
| Ինչպե՞ս են գործերը | **How are things?**<br>**How goes it?** | *հաու ար թինգս*<br>*հաու գոուզ իթ* |
| Ուրախ եմ, որ ձեզ տեսա | **It's good to see you,**<br>**Nice meeting you** | *իթս գուդ թու սի յու,*<br>*նայս միիթինգ յու* |
| Շնորհակալություն, լավ եմ | **Fine, thank you**<br>**I'm all right** | *ֆայն, թենք յու,*<br>*այմ օլ ռայթ* |
| Վատ չեմ | **Not bad**<br>**Not too well** | *նոթ բեդ*<br>*նոթ թուու ուել* |
| Ոչինչ (կամաց-կամաց) | **So, so** | *սոու, սոու* |

| | | |
|---|---|---|
| Ցտեսություն | **Good bye** | *գուդ բայ* |
| Կհանդիպենք | **See you (later)** | *սի յու (լէ՛յթը)* |
| Առայժմ | **So long** | *սոու լոն* |
| Ես պետք է գնամ | **I must be going** | *այ մասթ բի գո՛ուին* |
| Հուսով եմ կրկին կհանդիպենք | **Hope we meet again** | *հոուփ ուի միիթ ը՛գէյն* |
| Ողջույններս հաղորդեք... | **(Give) my regards...** | *(գիվ) մայ ռիգա՛ա-դս* |
| ձեր կնոջը | **to your wife** | *թու յօր ուայֆ* |
| ձեր մայրիկին | **to your mother** | *թու յօր մա՛դը* |



## ❀ Ծանոթություն

| | | |
|---|---|---|
| Թույլ տվեք ներկայացնել | **Let me introduce** | *լէթ մի ինթրը՛դյուս* |
| Թույլ տվեք ներկայանալ | **Let me introduce myself** | *լէթ մի ինթրը՛դյուս մայսէլֆ* |
| Ծանոթացեք... | **I want you to meet...** | *այ վօնթ յու թու միիթ...* |
| կնոջս հետ | **my wife** | *մայ ուայֆ* |
| ամուսնուս հետ | **my husband** | *մայ հա՛զբընդ* |
| Դուք ծանո՞թ եք | **Have you met?** | *հէվ յու մէթ* |
| Ուրախ եմ ծանոթանալ | **Pleased/Glad to meet you** | *փլիզդ/գլեդ թու միիթ յու* |
| Քանի՞ տարեկան եք | **How old are you?** | *հաու օլդ ար յու* |
| Ես... տարեկան եմ | **I am... years old** | *այ ըմ... յիըս օլդ* |
| Ես ուզում եմ ձեզ հետ ծանոթանալ | **I've been looking forward to meeting you.** | *այվ բին լո՛ւքինգ ֆօ՛ւըդ թու մի՛թինգ յու* |
| Իմ անունն է... | **My name is...** | *մայ նէյմ իզ...* |
| Դուք կարող եք ինձ անունով դիմել | **You may call me Ann** | *յու մէյ քօլ մի էն* |
| Ես վաղուց էի ցանկանում ծանոթանալ ձեզ հետ | **I've always wanted to meet you** | *այվ օ՛լվզ վօնթիդ թու միիթ յու* |

| | | |
|---|---|---|
| Ողջույն: Իմ անունը Փիթեր է: Ես Անգլիայից եմ | **Hello! My name is Peter. I am from England** | *հէ՛լօու. մայ նէյմ իզ փիթը. այ ըմ ֆրօմ ի՛նգլէնդ* |
| Շատ հաճելի է ձեզ հետ ծանոթանալ | **(I'm) pleased to meet you** | *այըմ փլիզդ թու միիթ յու* |
| Երջանիկ եմ ծանոթանալ ձեզ հետ | **Delighted to meet you** | *դի՛լայթիդ թու միիթ յու* |
| Դուք ինձ չե՞ք ճանաչում | **Haven't we met before?** | *հէվնթ վուի մէթ բի՛ֆօ* |
| Ձեր դեմքն ինձ ծանոթ է | **Your face seems familiar** | *յօր ֆէյս սիմս ֆը՛միլյը* |
| Ինչ լավ է, որ դուք եկաք | **How nice of you to come** | *հաու նայս ըֆ յու թու քամ* |
| Ես ձեր մասին շատ եմ լսել | **I've heard so much about you** | *այվ հըրդ սօու մաչ ըբաութ յու* |



## Դիմելաձև

| | | |
|---|---|---|
| պարոն | **Mr** | *մի՛սթը* |
| տիկին | **Mrs** | *մի՛սիզ* |
| օրիորդ | **Miss** | *միսս* |
| մատուցող(ուհի) | **waiter/waitress** | *ո՛ւէյթը/ո՛ւյթրիս* |
| բեռնակիր | **porter** | *փօ՛օթը* |
| սպա | **officer** | *օ՛ֆիսը* |

## ❀ Մասնագիտություն

| | | |
|---|---|---|
| Ինչո՞վ եք դուք զբաղվում | **What do you do?** | *ուօթ դու յու դու* |
| Ո՞վ եք մասնագիտությամբ | **What is your occupation?** | *ուօթ իզ յոր օքյուփէ՛յշըն* |
| Ի՞նչ եք աշխատում | **What is your job?** | *ուաթ իզ յոր ջոբ* |
| Որտե՞ղ եք աշխատում | **Where do you work?** | *վուէր դու յու վը՛րք* |
| Դուք աշխատո՞ւմ եք, թե՞ սովորում | **Do you work or study?** | *դու յու վը՛րք օր սթա՛դի* |
| Որտե՞ղ եք սովորում | **Where do you study?** | *վուէր դու յու սթա՛դի* |
| Ես չեմ աշխատում | **I don't work** | *այ դօունթ վը՛րք* |
| Ես սովորում եմ... | **I study...** | *այ սթա՛դի* |
| դպրոցում | **at school** | *ըթ սքուլ* |
| համալսարանում | **at a university** | *ըթ ը յունի՛վըրսիթի* |
| ինստիտուտում | **at an institute** | *ըթ ըն ի՛նսթիթյութ* |
| Ես աշխատում եմ... | **I work...** | *այ վը՛րք* |
| դպրոցում | **at school** | *ըթ սքուլ* |
| բանկում | **in a bank** | *ին ը բէնք* |
| հիվանդանոցում | **in a hospital** | *ին ը հօ՛սփիթըլ* |
| գործարանում | **at a plant** | *ըթ ը փլանթ* |



| | | |
|---|---|---|
| Ես... | **I am...** | *այ էմ* |
| ուսանող եմ | **a student** | *ը սթյու՛դընթ* |
| ասպիրանտ եմ | **a post-graduate** | *ը փօուսթ-գրէդյուէյթ* |
| ուսուցիչ եմ | **a teacher** | *ը թիչը* |
| բանվոր եմ | **a worker** | *ը վօրքը* |
| տնային տնտեսուհի եմ | **a housewife** | *ը հա՛ուզվուա՛յֆ* |
| Ես աշխատում եմ շաբաթը 5 օր | **I work 5 days a week** | *այ վը՛րք ֆայվ դէյս ը վուիք* |
| Իմ ամուսինը/կինը շատ է աշխատում | **My husband/ wife works much (a lot)** | *մայ հազբընդ/ ուայֆ վըրքս մաչ (ը լօթ)* |
| Ես ուզում եմ նոր աշխատանք գտնել | **I'd like to get a new job** | *այդ լայք թու գէթ ը նյու ջոբ* |
| Նա ստանում է բարձր աշխատավարձ | **He/She gets a good salary** | *հի/շի գէթս ը գուդ սէ՛լըրի* |
| Ընդհանրապես, կանայք ստանում են այնքան աշխատավարձ, որքան տղամարդիկ | **In general women receive the same pay as men** | *ին ջէ՛նըրըլ ուի՛մէն րիսի՛վ դը սէյմն փէյ ազ մէն* |
| փաստաբան | **lawyer** | *լօ՛ը* |
| դերասան | **actor** | *էքթը* |
| գործարար | **businessman** | *բի՛զնիսմըն* |

| | | |
|---|---|---|
| հաշվապահ | **accountant** | *ըքա՛ունթընթ* |
| տնային տնտեսուհի | **housewife** | *հա՛ուզվա՛յֆ* |
| բժիշկ | **doctor** | *դո՛քթը* |
| դիրիժոր | **conductor** | *քըն՛դաքթը* |
| լրագրող | **journalist** | *ջը՛ռնըլիսթ* |
| ինժեներ | **engineer** | *էնջինի՛ը* |
| պատմաբան | **historian** | *հիսթօ՛րիըն* |
| օդաչու | **pilot** | *փա՛յլըթ* |
| բուժքույր | **nurse** | *նըըս* |
| մեխանիկ | **mechanic** | *մէքը՛նիք* |
| վարորդ | **driver** | *դրա՛յվը* |
| նավաստի | **sailor** | *սէ՛յլը* |
| երաժիշտ | **musician** | *մյուզի՛շըն* |
| մատուցող(ուհի) | **waiter/waitress** | *վէ՛յթը/վէ՛յթրիս* |
| երգիչ | **singer** | *սի՛նգը* |
| գրող | **writer** | *ռա՛յթը* |
| խոհարար | **cook** | *քուք* |
| բանաստեղծ | **poet** | *փօ՛ուիթ* |
| ուսուցիչ | **teacher** | *թի՛չը* |
| խմբագիր | **editor** | *է՛դիթը* |
| գլխավոր խմբագիր | **editor-in-chief** | *է՛դիթըրինչի՛ֆ* |
| քարտուղար | **secretary** | *սէ՛քրէթըրի* |
| ուսանող | **student** | *սթյու՛դընթ* |
| կառավարիչ | **manager** | *մէ՛նէջը* |
| գիտնական | **scholar,scientist** | *սքօ՛լը, սա՛յընթիսթ* |
| նկարիչ | **artist** | *ա՛րթիսթ* |
| տնտեսագետ | **economist** | *իքօ՛նըմիսթ* |



## Քաղաքավարություն

| | | |
|---|---|---|
| Շնորհակալություն *(խսկց.)* | **Thank you!** | *թէնք յու* |
| Շնորհակալ եմ | **Thanks!/ Ta!** | *թէնքս / թաա* |
| (գործածվում է միայն ծանոթներին դիմելիս) | | |
| Շատ շնորհակալ եմ | **Thank you very much!** | *թէնք յու ուէրի մաչ* |
| Ինչո՞վ կարող եմ օգնել ձեզ | **What can I do for you!** | *ուօթ քէն այ դու ֆօօ յու* |
| Չարժե | **You are welcome** | *յու աը ուէ՛լքըմ* |
| | **Not at all** | *նօթ ըթ օօլ* |
| | **No sweat** | *նօու սվեթ* |
| Ասացեք, խնդրեմ որտե՞ղ (ե՞րբ, ո՞վ, ինչպե՞ս)... | **Could you tell me where (when, who, how)...?** | *քուդ յու թէլ մի ուէը (ուէն, հու, հաու)* |
| Կարելի՞ է այստեղ ծխել | **May I smoke here?** | *մէյ այ սմօուք հիը* |
| Այո, խնդրեմ | **Do, please** | *դու, փլիզ* |
| Ցավոք՝ ոչ | **I am afraid not** | *այ ըմ ը՛ֆրէյդ նօթ* |
| Ցավոք, չեմ կարող | **Sorry, I can't** | *սօրի, այ քանթ* |
| Դուք շատ բարի եք | **You are very kind** | *յու աը վէրի քայնդ* |
| Հուսով եմ, որ | **I hope that...** | *այ հօուփ դէթ* |
| Ներեցեք | **Excuse me...** | *իքս՛քյուզ մի* |
| | **Pardon (me)** | *փաադն (մի)* |

## ❀ Համաձայնություն և անհամաձայնություն

| | | |
|---|---|---|
| Այո, իհարկե | Yes, certainly<br>Yes, of course | յէս, սը՛րթընլի<br>յէս ըֆ քօօս |
| Շատ լավ | Very well | վէրի ուէլ |
| Ահա, խնդրեմ | Here you are | հիը յու ար |
| Հաճույքով | With pleasure | ուիդ փլէժը |
| Խնդիր չկա | (It's) no problem | իթս նօու փրօբլըմ |
| Անշուշտ | naturally/<br>sure (Am. E) | նէ՛չըրըլի/<br>շուը |
| Ճիշտ է | That's right | դաթս ռայթ |
| Ճիշտ այդպես | Exactly, precisely,<br>quite so | իգզէ՛ըքթլի, փրի-<br>սա՛յզլի, քուայթ սօու |
| Դուք իրավացի եք | You're right | յու ար ռայթ |
| Անկասկած | No doubt | նօու դաութ |
| Կարծում եմ՝ այո | I think so<br>I suppose so | այ թինք սօու<br>այ սը՛փօուզ սօու |
| Հուսով եմ, որ այդպես է | I hope so | այ հօուփ սօու |
| Միանգամայն հնարավոր է | Most likely<br>Most probably | մօուսթ լայքլի<br>մօուսթ փրօ՛բըբլի |
| Թող ձեր ասածը լինի | As you say | էզ յու սէյ |
| Իհարկե՝ ոչ | Of course, not<br>Certainly, not | ըֆ քօօս, նօթ<br>սը՛րթընլի նօթ |



| | | |
|---|---|---|
| Դուք սխալվում եք | You are wrong | յու ար րօնգ |
| Ես չեմ կարող համաձայնվել ձեզ հետ | I can't agree with you | այ քանթ ըգրի ուիդ յու |
| Ես ձեզ հետ համաձայն չեմ | I don't agree with you | այ դօունթ ըգրի ուիդ յու |
| Չի կարող պատահել | That can't be true | դաթ քանթ բի թրու |
| Դա անհնար է | It's impossible | իթս իմփոսըբլ |
| Ոչ մի դեպքում | By no means | բայ նօու մինս |
| Խոսք լինել չի կարող | Out of the question | աութ ըֆ դը քուէշչըն |
| Ընդհակառակը | On the contrary! | օն դը քօ՛նթրըրի |
| Բնավ ոչ | Not at all | նօթ ըթ օօլ |
| Հազիվ թե | Hardly, Not likely | հա՛րդլի, նօթ լայքլի |
| Կասկածում եմ | I doubt it | այ դաութ իթ |
| Վստահ չեմ | I'm not sure | այմ նօթ շուը |
| Դժվար է ասել | (It's) hard to say | (իթս) հարդ թու սէյ |

## ❁ Ցանկություններ: Շնորհավորանքներ

| | | |
|---|---|---|
| Ցանկանում եմ հաջողություն | **I wish you every success!** | *այ ուիշ յու էվրի սըքսէ՛զ* |
| Ընդունեք լավագույն մաղթանքներս | **Accept my best wishes!** | *ըքսէ՛փթ մայ ուիշի՛զ* |
| Ամենայն բարիք | **All the best!** | *օլ դը բէսթ* |
| Հաջողություն | **Good luck!** | *գուդ լաք* |
| Պահպանի՛ր քեզ | **Take care!** | *թէյք քէր* |
| Մի փխտվի՛ր | **Cheer up!** | *չիըր ափ* |
| Ցանկանում եմ | **Have** | *հէվ* |
| -հաճելի հանգիստ | **a good rest!** | *ը գուդ րէսթ* |
| -հաճելի ճանապարհորդություն | **a nise trip!** | *ը նայս թրիփ* |
| -հաճելի ծովային ճանապարհորդություն | **a pleasant voyage!** | *ը փլէզը՛նթ վօ՛իջ* |
| Ծնունդդ շնորհավոր | **Happy birthday to you!** | *հէ՛փփի բը՛րդդէյ թու յու* |
| Ցանկանում եմ երկար տարիների կյանք | **Many happy returns of the day!** | *մէնի հէ՛փփի րիթը՛ռնս ըվ դը դէյ* |
| Փոխանցիր լավագույն մաղթանքներս | **Give my best regards to** | *գիվ մայ բէսթ րի՛գարդզ թու* |
| -ընտանիքիդ | **your family** | *յօր ֆէ՛մըլի* |
| -ամուսնուդ | **your husband** | *յօր հա՛զբընդ* |
| -կնոջդ | **your wife** | *յօր ուայֆ* |
| Շնորհավորում եմ | **Congratulations!** | *քընգ՛րէթյու՛լէյշընզ* |
| Շնորհավորանքներս | **My congratulations to you** | *մայ քընգրէթյու՛լէյշընզ թու յու* |
| Կարո՞ղ եմ ձեզ շնորհավորել | **May I congratulate to you?** | *մէյ այ քըն՛գրէթյու՛լէյթ թու յու* |
| Շնորհավոր Ամանոր | **Happy New Year!** | *հէ՛փփի նյու յիր* |
| Շնորհավոր Սուրբ Ծնունդ | **Merry Christmas!** | *մէ՛րի քրի՛սմըս* |
| Լավագույն ցանկություններով | **(My) very best wishes!** | *(մայ) վերի բեսթ վուիշիզ* |
| Բարի ճանապարհ | **Have a nice trip!** | *հէվ ը նայս թրիփ* |
| Բարի գալուստ | **Welcome!** | *վուէլքըմ* |
| Բարի վերադարձ | **Welcome home!** | *վուէլքըմ հոում* |

## ❀ Կասկածանք: Զարմանք: Նախազգուշացում

| | | |
|---|---|---|
| Կասկածում եմ | **I doubt it** | *այ դաուբ իթ* |
| Ո՞վ գիտե | **Who knows!** | *հու նոուզ* |
| Աստված գիտե | **God knows!** | *գոդ նոուզ* |
| Հազիվ թե | **Hardly** | *հա՛րդլի* |
| Դուք համոզվա՞ծ եք | **Are you sure?** | *ար յու շուր* |
| Մի՞թե դա ճիշտ է | **Can it be true?** | *քէն իթ բի թրու* |
| Ես վստահ չեմ | **I am not sure** | *այ էմ նոթ շուր* |
| Քիչ հավանական է | **Most unlikely** | *մոուսթ անլայքլի* |
| Դժվար է ասել | **You can never tell,**<br>**You never know** | *յու քէն նէվր թէլ,*<br>*յու նէվր նոու* |
| Մի՞թե | **Really?** | *րի՛ըլի* |
| Չի կարող պատահել | **Impossible** | *իմ՛փոսըբլ* |
| Աստվա՜ծ իմ | **Good heavens!**<br>**Jesus (Christ)!** | *գուդ հէվնզ*<br>*ջի՛զըս (քրայսթ)* |
| Գրողը տանի | **Oh hell!** | *օ հէլ* |
| Անհավանակա՛ն է | **Incredible!** | *ին՛քրեդըբլ* |
| Դուք կատակո՞ւմ եք | **Are you joking?** | *ար յու ջոուքինգ* |
| Ձեր գործը չէ | **(It's) none of your business!** | *(իթս) նան ըվ յոր բի՛զնիս* |
| Հեռացի՛ր | **Get out of here!** | *գէթ աութ ըվ հիր* |
| Ուշադրությո՛ւն | **Attention!** | *ը՛թէնշն* |
| Զգո՛ւյշ | **Look out!** | *լուք աութ* |
| Զգո՛ւյշ եղեք | **Be careful!** | *բի քէ՛րֆուլ* |



## ❀ Ընդհանուր բառեր և արտահայտություններ

| | | |
|---|---|---|
| Ի միջի այլոց | **by the way** | *բայ դը ուէյ* |
| Նախ և առաջ | **first of all** | *ֆըրսթ ըվ օօլ* |
| Իմ կարծիքով | **to my mind** | *թու մայ մայնդ* |
| Անկեղծ ասած | **frankly speaking** | *ֆրէ՛նքլի սփի՛քինգ* |
| Ի դեպ | **as a matter of fact** | *էզ ը մէթր ըվ ֆաքթ* |
| Կարճ ասած | **in short/**<br>**shortly speaking** | *ին շօօթ/*<br>*շօօթլի սփի՛քինգ* |
| Ամեն դեպքում | **just in case** | *ջասթ ին քէյս* |
| Եվ այլն | **and so on,**<br>**and so forth** | *ընդ սոու օն,*<br>*ընդ սոու ֆօրթ* |
| Ինչպե՞ս ես | **How are you?**<br>**How are you getting on?** | *հաու ար յու*<br>*հաու ար յու գէթին օն?* |
| Իհարկե | **Certainly**<br>**Of course** | *սը՛ըթընլի*<br>*ըֆ քօօս* |
| Հաճույքով | **With pleasure** | *ուիթ փլէ՛ժը* |
| Լավ | **All right, OK** | *օլ րայթ, օու՛քէյ* |
| Վատ | **Bad** | *բէդ* |
| Թերևս | **May be** | *մէյ բի* |
| Դա հնարավոր է | **It's possible** | *իթս փօ՛սըբլ* |
| Ինձ թվում է | **It seems to me** | *իթ սիիմզ թու մի* |
| Շատ լավ է | **Very good!** | *վէրի գուդ* |

| | | |
|---|---|---|
| Հրաշալի է | **(That's) marvellous (That's) great!** | *(ղեթս) մա՛ավիլըս (ղեթս գրէյթ)* |
| Ինչպիսի՜ հաջողություն | **It's a great piece of luck!** | *իթս ը գրէյթ փիս ըվ լաք* |
| Ցավալի է | **What a pity** | *ուօթ ը փիթի* |
| | **Too bad** | *թուու բէըդ* |
| Ցավում եմ | **I'm sorry** | *այմ սօռի* |



## ❁ Ընդհանուր հարցեր

| | | |
|---|---|---|
| Ո՞վ | **Who?** | *հու* |
| Ի՞նչ | **What?** | *ուօթ* |
| Ո՞րտեղ | **Where?** | *ուէը* |
| Ե՞րբ | **When?** | *ուէն* |
| Ինչո՞ւ | **Why?** | *ուայ* |
| Ո՞ւր | **Where?** | *ուէը* |
| Որտեղի՞ց | **Where from?** | *ուէը ֆրոմ* |
| Ինչքա՞ն | **How many?** | *հաու մէնի* |
| | **How much?** | *հաու մաչ* |
| Ինչպե՞ս | **How?** | *հաու* |
| Ո՞ւմ հետ | **With whom?** | *ուիթ հում* |
| Սա ո՞վ է | **Who is this?** | *հու իզ ղիզ* |
| Ի՞նչ ասացիք | **What did you say?** | *ուօթ դիդ յու սէյ* |
| Ի՞նչ եք անում | **What are you doing?** | *ուօթ ար յու դուինգ* |
| Ի՞նչ եք ուզում | **What do you want?** | *ուօթ դու յու ուօնթ* |
| Սա ի՞նչ է | **What is this?** | *ուօթ իզ ղիզ* |
| Ի՞նչ է պատահել | **What has happened?** | *ուօթ հէզ հէ՛փընդ* |
| Որտե՞ղ ենք | **Where are we?** | *ուէը ար ուի* |
| Ո՞ւր եք գնում | **Where are you going?** | *ուէը ար յու գոուինգ* |
| Սա (սրանք) ո՞ւմն է (են) | **Whose is (are) this (these)...?** | *հուզ իզ (ար) ղիզ (ղիիզ)* |

| | | |
|---|---|---|
| Չէի՞ք ասի | **Could you tell me?** | *քուդ յու թէլ մի* |
| Դուք ունե՞ք | **Do you have...?** | *դու յու հէվ* |
| Ուզո՞ւմ եք | **Would you like...?** | *ուդ յու լայք* |
| Ի՞նչ է պատահել | **What is the matter...?** | *ուօթ իզ դը մէ՛թը* |
| Կարելի՞ է | **May I?** | *մէյ այ* |
| Թույլ կտա՞ք մտնել | **May I come in?** | *մէյ այ քամ ին* |
| Թույլ կտա՞ք ծխել | **May I smoke?** | *մէյ այ սմօուք* |



Բաժին II

# ՄԵԿՆՈՒՄ ԵՎ ԺԱՄԱՆՈՒՄ

| | | |
|---|---|---|
| Որտե՞ղ է պահասենյակը | **Where is the cloak room (left-luggage office)?** | *ուէր իզ դը քլօ՛ուք ռում (լէֆթ-լա՛գիջ օֆիս)* |
| Ահա իմ տոմսը | **Here is my ticket** | *հիր իզ մայ թի՛քիթ* |
| Այստեղ կարելի՞ է ծխել | **May I smoke here?** | *մէյ այ սմօուք հիր* |
| Ինչպե՞ս կարող եմ հասնել օդակայան | **How do I get to the airport?** | *հաու դու այ գէթ թու դը է՛րփօթ* |
| Որտե՞ղ են ձևակերպում ուղեբեռը | **Where can I have my luggage registered?** | *ուէր քէն այ հէվ մայ լա՛գիջ ռէ՛ջիսթըդ* |
| Ես դիվանագիտական անձնագիր ունեմ | **I have a diplomatic passport** | *այ հէվ ը դիփլը՛մէթիք փա՛ասփորթ* |
| Ես Հայաստանի քաղաքացի եմ | **I am a citizen of Armenia** | *այ էմ ը սի՛թիզն ըվ ա՛րմինիը* |
| Կարելի՞ է խնդրել | **Can you help me?** | *քէն յու հէլփ մի* |
| Մի քիչ հյութ | **Some juice** | *սամ ջո՛ւուս* |
| Ես գործարար եմ | **I am a businessman** | *այ էմ ը բի՛զնիսմըն* |

| | | |
|---|---|---|
| Ես բողոքում եմ | **I protest** | *այ փրօ՛ութէսթ* |
| Ես ուզում եմ պատվիրել | **I want to book** | *այ ուօնթ թու բուք* |
| Ինձ հարկավոր է | **I want to** | *այ ուօնթ թու* |
| ուղեբեռ | **baggage (Am.E)**<br>**luggage (Br.E)** | *բէ՛գիջ*<br>*լա՛գիջ* |
| երկաթուղի | **railway (Br.E)**<br>**railroad (Am.E)** | *ռէ՛յլուէյ*<br>*ռէ՛յլռօուդ* |
| պահասենյակ | **left-luggage office (Br.E) / baggage room (Am.E)** | *լէֆթլա՛գիջ օֆիս /բէ՛գիջռուում* |
| ետդարձի տոմս | **return ticket (Br.E)**<br>**round-trip ticket (Am.E)** | *ռիթը՛ռն թի՛քիթ, ռաունդ-թրիփ թի՛քիթ* |
| ննջավագոն | **sleeping car (Br.E)** | *սլի՛փինգ քաա* |
| ճեպընթաց | **express** | *իքս՛փրես* |
| երկրորդ կարգ | **tourist class** | *թու՛րրիսթ քլաս* |
| ծխողների համար | **smoking** | *սմօուքինգ* |
| չծխողների համար | **non-smoking** | *նան-սմօուքինգ* |
| ավել քաշ | **overweight** | *օուվը՛ուէյթ* |
| տեղ | **seat** | *սիիթ* |
| չվերթի համար | **flight number** | *ֆլայթ նամբը* |
| անվտանգության գոտի | **seat belts** | *սիիթ բէլթս* |



| | | |
|---|---|---|
| ուղեկցորդուհի | **(air)hostess**<br>**stewardess** | *(էը)հօ՛ուսթիս*<br>*սթյո՛ւըդիս* |
| բարձրություն | **altitude** | *է՛լթիթյուուդ* |
| օդաչու | **pilot** | *փա՛յլըթ* |
| վայրէջք | **landing** | *լէ՛նդինգ* |
| չվերթ | **flight** | *ֆլայթ* |
| արագություն | **speed** | *սփիիդ* |

## Ցուցանակներ օդանավակայանում և ինքնաթիռում

| | | |
|---|---|---|
| Տեղեկատու | **Information** | *ինֆը՛մէյշն* |
| Հեռախոս | **Telephone/ Pay Phone** | *թէ՛լիֆօուն/ փէյ ֆօուն* |
| Բուժկետ | **First Aid** | *ֆըրսթ էյդ* |
| Տղամարդկանց զուգարան | **Men/Gentlemen** | *մէն/ջէ՛նթըլմէն* |
| Կանանց զուգարան | **Women/Ladies** | *ո՛ւիմին/լէ՛յդիզ* |
| Տարադրամի փոխանակում | **Foreign Exchange /Money Exchange** | *ֆօ՛րին իքս՛չէյնջ/ մա՛նի իքս՛չէյնջ* |
| Ժամանում | **Arrivals** | *ը՛ռայվլզ* |
| Մեկնում | **Departures** | *դի՛փաաչըզ* |

| | | |
|---|---|---|
| Հաշվառում | Check-in | *չէք-ին* |
| Հենասեղան 19 | Gate 19 | *գէյթ 19* |
| Մաքսատուն | Customs | *քա՛սթըմզ* |
| Ելք | Exit | *է՛քսիթ* |
| Մուտք | Entrance | *է՛նթրընս* |
| Դեպի դուրս | Push | *փուշ* |
| Դեպի քեզ | Pull | *փուլ* |
| Ամրագոտիները կապեք | Fasten Seat Belts | *ֆա՛սան սիիթ բէլթս* |
| Չծխել | No Smoking | *նոու սմոուքինգ* |
| Փրկարարական բաճկոնը ձեր նստարանի տակ է | Life Vest Under Your Seat | *լայֆ վէսթ ա՛նդը յոր սիիթ* |
| Զուգարանն ազատ է | Toilet Vacant | *թօ՛յլիթ վէ՛յքընթ* |
| Զուգարանը զբաղված է | Toilet Occupied | *թօ՛յլիթ օ՛քյուփայդ* |
| Սառը (ջուր) | Cold | *քօլդ* |
| Տաք (ջուր) | Hot | *հօթ* |
| Ուղեբեռի հանձնում | Luggage/ Baggage Claim | *լա՛գիջ/բէ՛գիջ քլէյմ* |



Բաժին III

# ՀՅՈՒՐԱՆՈՑՈՒՄ

| | | |
|---|---|---|
| Ինձ հարկավոր է... | **I (we) need a... room** | *այ (ուի) նիիդ ը... րուում* |
| մեկ տեղանոց | **single** | *սինգլ* |
| երկու տեղանոց | **double** | *դաբլ* |
| լյուքս | **suit** | *սյուիթ* |
| Համարում կա՞... | **Does the room have...?** | *դազ դը րուում հէվ* |
| օդափոխիչ | **a conditioner** | *ը քընդի՛շընը* |
| հեռուստացույց | **a TV-set** | *ը թիվիսէթ* |
| սառնարան | **a fridge** | *ը ֆրիջ* |
| Որտե՞ղ է գտնվում... | **Where is...?** | *ուէր իզ* |
| վարսավիրանոցը | **hairdresser's** | *հէ՛րդրէսըս* |
| լողավազանը | **pool** | *փուլ* |
| Ո՞ր հարկում | **What floor is it?** | *ուօթ ֆլօօ իզ իթ* |
| Կա՞ արդյոք համար | **Is there a...room?** | *իզ դէր ը... րուում* |
| ավելի էժան | **cheaper** | *չիփըր* |
| ավելի լավը | **better** | *բէ՛թը* |
| Ինձ արթնացրեք ժամը 5-ին/7-ին | **Please wake me at five (seven)** | *փլիիզ ուէյք միի էթ ֆայվ (սէվն)* |
| Իմ համարում չի աշխատում | **The... in my room is out of order** | *դը... ին մայ րուում իզ աութ օվ օ՛րդը* |

| | | |
|---|---|---|
| Ինձ չե՞ն հարցրել | **Has anyone asked for me?** | *հէզ է՛նիուան ասքդ ֆօր մի* |
| Եթե ինձ հարցնեն, ես... | **If anyone asks for me, I am...** | *իֆ է՛նիուան ասքս ֆօր մի, այ ըմ* |
| համարում եմ | **in my room** | *իմ մայ ռում* |
| կլինեմ... ժամից | **away until...** | *ը՛ուէյ ըն՛թիլ* |
| Ես մեկնում եմ այսօր | **I am leaving today at...** | *այ ըմ լի՛իվին թը՛դէյ էթ* |
| Խնդրում եմ տաքսի կանչեք | **Call a taxi please** | *քօլ ը թէքսի փլիզ* |
| Սենյակ հինգ աստղանի հյուրանոցում | **A room in a five-star hotel** | *ը ռում ին ը ֆայվ -սթար հոութէլ* |
| Ես պատվիրել եմ... | **I booked...** | *այ բուքդ* |
| Համարը 2-րդ հարկում է | **A room on the first floor** | *ը ռում օն դը ֆըրսթ ֆլօօ* |
| Վերելակ կա՞ | **Is there a lift?** | *իզ դէր ը լիֆթ* |
| Ինձ դուր չի գալիս | **I don't like it** | *այ դօնթ լայք իթ* |
| Ինձ դուր է գալիս | **I like it** | *այ լայք իթ* |
| Բանալին, խնդրում եմ | **My key, please** | *մայ քիի, փլիզ* |
| Տաք ջուր չկա | **No hot water** | *նոու հօթ ուօ՛օթը* |
| Սառը ջուր չկա | **No cold water** | *նոու քօուլդ ուօ՛օթը* |
| Հեռուստացույցը չի աշխատում | **The TV doesn't work** | *դը թիվի դազընթ ուըրք* |
| Ես կորցրել եմ բանալին | **I've lost my key** | *այըվ լօսթ մայ քիի* |
| Իրերս գողացել են | **My things are missing** | *մայ թինգզ առ մի՛սինգ* |



Բաժին IV

# ՓՈԽԱԴՐԱՄԻՋՈՑ

## Ճանապարհային նշաններ

| | | |
|---|---|---|
| Ուշադրություն | **Caution** | *քօ՛օշըն* |
| Փակ է երթևեկության համար | **Closed to Traffic** | *քլօզդ թու թրէ՛ֆիք* |
| Խաչմերուկ | **Crossroads** | *քրօ՛սռօուդս* |
| Փակուղի | **Cul-de-Sac** | *քուլդը՛սէք* |
| Ճանապարհին քարեր կան | **Loose Chippings** | *լուուզ չիփի՛նս* |
| Մուտքն արգելվում է | **No Entry** | *նոու է՛նթրի* |
| Վազանցն արգելվում է | **No Overtaking** | *նոու օուվը՛թէյքինգ* |
| Միակողմանի երթևեկություն | **One-Way** | *ուան ուէյ* |
| Անցում (հետիոտնի) | **Pedestrian Crossing** | *փի՛դէսթրիըն քրօ՛սինգ* |
| | **Crosswalk (Am.E)** | *քրօ՛սուօօք* |

